նակուի պայքարը ալքոլամոլութեան դէմ : Բարւոքել ժողովուրդին գնման կարո–ղութիւնը, երաշխաւորել աշխատանքը եւ նման ուրիշ խնդիրներ :

## ՃԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՓԱՐԻԶԻ մէջ երեքշաբթի պիտի սկսին բանակցութիւնները Ֆրանսայի, Անգլիոյ եւ Մ. Նահանգներու ներկայացուցիչնե–րուն միջեւ Խ. Միութեան ծանուցագրին մասին : Քաղ. շրջանակներու մէջ կը կար–ծուի թէ՝ արեւմտեան երեք պետութիւն–ները պիտի մերժեն Մոսկուայի առաջար–կած եւրոպական երկիրներու մեծ խոր–հրդաժողովը, ուր պիտի քննուին Եւրո–պայի պաշտպանութեան միջոցները : Սա–կայն բաց դուռ մը պիտի ձգուի ապագայ խորհրդակցութիւններու համար :

ԻՐԱՆԻ քարիւղին եւ անգլիական ընկե–րութեան միջեւ ստեղծուած երեք տար–ուան վէճը կը թուի թէ վերջացած է : Երկար բանակցութիւններէ վերջ կազ–մուած էր ուրիշ ընկերութիւն մը չահա–գործելու համար Իրանի հանքերը : Իրանի եւ միացեալ ընկերութեան համաձայնա–գիրը պիտի ստորագրուի քանի մը օրէն : Վարչական խորհուրդ մը կազ–մուած է բաղկացած ընկերութեան 5 ներկայացուցիչներէ եւ երկու անգամ ալ Իրանի ընկերութեան ներկայացուցիչնե–րէն : Վէճի մը պարագային խնդիրը պիտի յղուի Լահէյի միջազգային ատեանին ի–րաւարարութեան : Առաջին տարուան ար–տադրութիւնը պիտի ըլլայ մօտ 12 միլիոն 500.000 թոն, յետագային հասնելով մին–չեւ 32ուկէս միլիոն թոնի : Արտադրու–թեան 12 առ հարիւրը պիտի զտուի Աբա–տանի զտարաններուն մէջ : Իւրաքանչիւր թոնէն Իրան պիտի ստանայ երկու շիլին : Պայմանագիրին տեւողութիւնն է 25 տա–րի, որ լրանալէն վերջ պիտի երկարաձգ–ուի տասնըհինգ տարի եւս :

ՎԱՐՉԱՊԵՏԸ Պ. Մենտէս Ֆրանս Թու–նուզ մեկնեցաւ երէկ առտու, Պէյին ան–ձամբ յանձնելու համար բարենորոգու–մի նոր ծրագիրը : Իրեն կ՚ընկերանա–յին Թունուզի եւ Մարոքի գործերուն նա–խարարը եւ Մարեշալ Ժիւէն :

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ կը տօն–ուի յառաջիկայ Հոկտեմբեր 30ի գիշերը, «Միւթիւալիթէի» մեծ սրահին մէջ :



## Ֆ. Կ. ԽԱՉԻ «ՕՐ»ՈՒԱՆ ԱՌԹԻՒ

ԵՂԱՆԱԿԻ ՄԵԾ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ

Նախաձեռնութեամբ Լիոնի եւ Տէսինի քոյր մասնաճիւղերու :

Կիրակի, 8 Օգոստոս, առաւօտէն մին–չեւ երեկոյ, Քաֆէ Լամարկի մօտ զովա–սուն ծառաստաններուն մէջ :

Գեղարուեստական բաժին, երգարը–նակներու վրայ հայկ. երգեր եւ զանա–զան անակնկալներ :

Տէսինի դպրոցի աշակերտներու կողմէ պիտի ըլլան հայկական պարեր :

Առատ կերուխում :

Տեղւոյն վրայ սառնորակ ըմպելիներ եւ համադամ ուտելիքներ, խորոված միս եւ պաղպաղակ : Գիները ժողովրդական :

ԾԱՆՕԹ.— Օթօքառերը Փլաս Կիշառէն կը մեկնին ժամը 9.15ին :

ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆ

ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ ՕԳՆ. ՄԱՐՄՆԻ

օդափոխութեան կայանի Բ. խումբը պի–տի մեկնի Օգոստոս 9ին : Արձանագրու–թիւնները կը փակուին Օգոստոս վեցին, հետեւաբար կը յանձնարարենք ծնողնե–րուն որպէսզի փութան արձանագրու–թիւնները փոքրիկներուն որոնք պիտի եր–կուին օդափոխութեան կայան :

Օգոստոս վեցի առաւօտուն պէտք է կա–տարուին բժշկական քննութիւնները այն մանուկներուն որոնք դեռ քննուած չեն : Օգոստոս 9ին, մեկնումը տեղի պիտի ու–նենայ ժամը 8.30ին : Ուստի մանուկները պէտք է 15 ոփ. ժամ կոտօն ըլլան ժա–մը 8ին :

Նոյն օրը առաջին խումբի օդափոխու–թեան մանուկները պիտի վերադառնան :

## ԵՂԱՆԱԿԻ ՄԵԾ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

ՆՈՒԻՐՈՒԱԾ ԽԱՆԱՍՈՐԻ ԵՒ ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ՕՐՈՒԱՆ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Սասնոյ ապստամբութեան 50ամեակին առթիւ :

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Մար–սէյլի Շրջ. կոմիտէին, մասնակցութեամբ շրջանիս ենթակոմիտէներուն եւ խումբե–րուն : Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Շրջ. վար–չութեան եւ իր մասնաճիւղերուն, ինչպէս նաեւ Կապոյտ Խաչի մասնաճիւղերուն :

8 Օգոստոս, կիրակի ամբողջ օրը, Լէ Քայօլ Սէփտէմի ծառախիտ անտառին մէջ :

Կը նախագահէ ընկ. Յ. ՊԱՊԻԿԵԱՆ

Կը խօսի ընկ. Պ. ՋՊՈՒՔՃԵԱՆ

Այս տօնակատարութեան ներկայ պիտի ըլլայ Սէփթէմի քաղաքապետը իր խոր–հրդականներով :

Գեղարուեստական բաժին

Երգ, նուագ, արտասանութիւն եւ զա–նազան անակնկալներ, բարձրախօսով կը նուագուին հայկական եւ եւրոպական ըն–տիր եղանակներ :

Շրջանի ենթակոմիտէները եւ անհատ հայրենակիցները որոնք օթօքար չեն վար–ձած, կրնան առնել քս տանող թրօլէպիւ–սը եւ իջնել Սէփթէմէն մէկ կայարան յե–տոյ, Լէ Քայօլ ոստիկանական շէնքին առջեւ :

Հայ ազատագրութեան նախանձախնդիր մեր բոլոր հայրենակիցները սիրով կը հը–րաւիրուին ներկայ ըլլալու այս բացառիկ տօնակատարութեան :

Մուտքը ազատ է :

ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Սեբաստիոյ Մա–րատ Ուսումնասիրացը իր խորին ցաւակ–ցութիւնը կը յայտնէ այրի տիկին Մաք–սուտեանին, Պ. Գրիգոր Վահանին եւ պարագաներուն իրենց ամուսնոյն եւ եղ–բօր՝ Սարիմ Մաքսուտեանի մահուան առ–թիւ :

## ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԲԱՆԱԿՈՒՄԸ

Հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Կեդր. վարչութեան մասնակ–ցութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Ֆը–րանսայի շրջանի մասնաճիւղերուն, տեղի կ՚ունենայ Ժիւռա նահանգին Պէլ Ֆօնթէն բարձունքին վրայ Օգոստ. 5էն մինչեւ Օ–գոստոս 31 :

Այն բոլոր երիտասարդ – երիտասար–դուհիները որ մաս չեն կազմեր Հ. Յ. Դ. Նոր Սերունդ կազմակերպութեան եւ կ՚ուզեն մասնակցիլ այս բանակումին, պէտք է դիմեն իրենց քաղաքի կամ ար–ուարձանի Նոր Սերունդի վարչութեանց :

Պայմաններ՝ ա) Ամէն մասնակցող իր հետ կը բերէ սաւան, վերմակ եւ բարձ :

բ) Մասնակցողները առնուազն մէկ շաբթուան ապրուստի կանխավճարը կ՚ը–նեն, իրենց բանակավայր ժամանումին ա–տեն :

գ) Ամէն մէկ բանակողի ապրուստին համար կը պահանջուի օրական 550 ֆր., այս գինին մէջ հաշուուած է նաեւ սենեա–կին վարձքը :

Արձանագրութեանց եւ տեղեկութեանց համար դիմել Հ. Յ. Դ. Նոր Սերունդի մասնաճիւղերու վարչութեանց եւ

Գ. ՓԱՓԱԶԵԱՆԻ

226 Rue Saint-Denis, Paris

Հեռ. Սանթրալ 28–34 ժամը 10էն 12 կամ 15էն 18ը :

Շոգեկառքի ժամերը

- GARE DE LYON -
Descendre MORBIER
23h. 05, Voiture Directe
PARIS - BELLEGARDE
8h. 20, Train rapide
PARIS - SUISSE
Changer à ANDELOT Corresp. Micheline Direction MOREZ
Descendre MORBIER.

×

ՍՏԻՊՈՂԱԲԱՐ Կ՚ՈՒԶՈՒԻ խոհարարու–հի մը, բանակումին համար : Դիմել Պ. Գ. Փափազեանի, նոյն հասցէին :

Օր. ՍԻՐՎԱՐԴ ՏԱՏՕԵԱՆ
Պ. ԶԱՔԱՐ ՏՕՆԻԿԵԱՆ
Ամուսնացած

Կնքահայրութեամբ Պ. Փանոս Ասլան–եանի :

Ալփորվիլ, 25 Յուլիս, 1954

ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ ՄԷՕՏՕՆԻ ԱՆՏԱՌԻՆ ՄԷՋ

Ալֆորվիլի Ֆ. Կ. Խաչը կազմակերպած է դաշտահանդէս մը, այս կիրակի Մէօ–տօնի պաղ աղբիւրին քով : Մատչելի պիւ–ֆէ : Բարձրախօս եւ անակնկալներ, տեղ–ւոյն վրայ :

Օթօքարները կը մեկնին առաւօտուն ժամը 8.30ին, Պուլ. Քառնոյէն, իսկ միւ–սը Փլաս տիւ Փըթի Փօնէն : :

ՈՒՍՈՒՑԻՉ ԿԱՄ ՈՒՍՈՒՑՉՈՒՀԻ Կ՚ՈՒԶՈՒԻ

Ֆ. Կապ. Խաչի Տէսինի դպրոցին հա–մար : Նախընտրութիւն կը տրուի այր եւ կնոջ : Գոհացուցիչ պայմաններ (բնակա–րանը ապահովուած) : Մանրամասնու–թեանց համար դիմել՝ Ս. ԱՌԱՔԵԼԵԱՆԻ, 12 Ռիւ Նանսէն, Տէսին (Իզէռ) :



- Imp. Araxes 46, rue Richer. Paris

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԹՈՒՆՈՒԶԻ կառավարութիւնը կազմըւած պիտի ըլլայ մինչեւ երկուշաբթի օր։ Բանակցութիւնները կը շարունակուին վարչապետին եւ Ֆրանսական մարզպանին միջեւ, քանի որ Ֆրանսա պէտք է հաւանի նախարարներու ընտրութեան եւ Նոր Տեսթուրեաններու թիւը որոշուածէն աւելի գտնուած է։

× Եգիպտոսի «Իսլամ Եղբայրներ»ու միութիւնը դժգոհ է Թունուզի մէջ Նոր Տեսթուրեաններու բռնած հաշտարար ընթացքէն։ Յայտարարութեան մը մէջ կ'ըսեն թէ երդուած էին ամբողջական անկախութիւն ձեռք բերել՝ Ֆրանսական Միութենէն դուրս եւ մաս կազմել Արաբական Միութեան։ «Թունուզի ներքին անկախութեան հետեւանքով՝ Նոր Տեսթուր բարձր դաւաճանութեան արարք մը կատարած եւ ազատագրութեան շարժումին դէմ դաւադրած կ'ըլլայ» կ'ըսեն Իսլամ Եղբայրները։

× Ամէն հաւանականութեան դէմ նոր ուժեր կը ղրկուին Թունուզ, տեղւոյն զօրքերուն թիւը 50.000ի բարձրացնելու համար։

ԱՐԵՒԵԼԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ անկախութեան նոր ապացոյց մը տալու համար Խ. Միութիւնը ջնջեց այն բոլոր հրահանգները, որ տրուած են Մոսկուայի կողմէ, 1945էն սկսեալ, քաղաքական, տնտեսական եւ մշակութային խնդիրներու վերաբերեալ։

ԱՆԿԱՐԳԵԼՈՒԹԵԱՆ միջազգային մըրցումին վերջինը տեղի ունեցաւ Սէն-Եանի մէջ, ուր առաջնութիւնը շահեցան Ռուսները, շնորհիւ իրենց մասնաւոր սարքաւորման։ Չեխոսլովաքները դասուեցան երկրորդ, իսկ Ֆրանսացիները՝ երրորդ։ Յետոյ կուգան Եուկոսլաւիա, Անգլիա, Իտալիա եւ Մ. Նահանգները։

ԹՈՒՐՔԻՈՅ Ազգ. Պաշտպանութեան գնանը կը յայտարարէ թէ զօրակոչի պիտի ենթարկուին Էրզրումի շրջանէն 15 հազար, իսկ Կէլիպօլուի շրջանէն 5000 պահեստի սպաներ եւ զինուոր, նոր զէնքերուն վարժեցնելու համար, որ պիտի տեւէ ամիս մը։

× Արտասահմանի ճամբորդութեանց սեզոնին հետեւանքով օրական քանի մը հազրի միայն արտօնութիւն տրուած է։ մինչ առաջ 100է աւելի անձեր անցագիր կը պահանջէին։

ՀԻՐՈՇԻՄԱՅԻ մէջ (Ճապոն) զանգակները հնչեցին իններորդ տարեդարձին առթիւ հիւլէական առաջին ռումբին գործածութեան, որ պատճառած էր 78.000 մահ։ Քաղաքը այժմ 300.000 բնակիչ ունի։ Արարողութիւններ ըկատարուեցան այն կամուրջին մօտ ուր ինկաւ ռումբը եւ բանաձեւ մը քուէարկուեցաւ պահանջելով հիւլէական զէնքերու արգիլումը։ Երկուշաբթի օր ալ նոյն արարողութիւնը պիտի կատարուի հիւլէական երկրորդ ռումբը ընդունող Նակազաքի քաղաքին մէջ։

Խ. ՄԻՈՒԹԵԱՆ մէջ նոր նախարարութիւն մը ստեղծուեցաւ քաղաքային ու երկրագործական շինութիւններով զբաղելու համար։

ԱԹԷՆՔԻ մէջ Չըրչիլի անունով կոչըւող փողոցը ասկէ վերջ պիտի կոչուի «Կիպրոս փողոց», ըստ Թաղապետութեան ժողովի որոշման եւ իբր բողոքի ցոյց Կիպրին Յունաստանի չմիացնելու համար։

ՄԱՐԴ ՄԸ ԿԱԽՈՒԱԾ գտնուեցաւ Օրլիի թաղապետական պարտէզին մէջ ծառէ մը։ Գրպանէն թուղթ մը գտնուած էր. — «Մասնակցած եմ 14–18ի պատերազմին նաեւ 39–45ն արտաքոյ պատերազմին։ Երկրագործական արժանիքի եւ Պատերազմական Խաչի պատուանշաններն ունիմ։ Անունս Բ–ով կը սկսի, ազգանունս Ս–ով, բնակած քաղաքս Ն–ով։ 13 մահ ընտանիքի մը մէջ գժբախտաբեր է։ Ոստիկանութիւնը զօրաւոր է կ'ըսեն։ Եթէ զօրաւոր էք, փորձեցէք գտնել իմ ինքնութիւնս»։

ՕԴԱՆԱՒԱՅԻՆ շրջանակներու մէջ յեղափոխական նորութիւն մը ստեղծուեցաւ։ Ամերիկայի մէջ օդանաւ մը շինուեցաւ որ կեցած տեղէն ուղղահայեաց կերպով կը բարձրանայ, իր շրջանը կատարելէ ետք, նոյն ձեւով, ցիտակ գիծով գետին կ'իջնէ։ Այս գիւտը պիտի ջնջէ ընդարձակ կայաններու անհրաժեշտութիւնը։

## ԵՂԱՆԱԿԻ ՄԵԾ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

★

ՆՈՒԻՐՈՒԱԾ ԽԱՆԱՍՈՐԻ
ԵՒ
ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ՕՐՈՒԱՆ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Սասնոյ ապստամբութեան 50ամեակին առթիւ։

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. կոմիտէին, մասնակցութեամբ շրջանիս ենթակոմիտէներուն եւ խումբերուն։ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Շրջ. վարչութեան եւ իր մասնաճիւղերուն, ինչպէս նաեւ Կապոյտ Խաչի մասնաճիւղերուն։

8 Օգոստոս, կիրակի ամբողջ օրը, Լէ Բայօլ Սէփտէմի ծառախիտ անտառին մէջ։

Կը նախագահէ ընկ. Յ. ՊԱՊԻԿԵԱՆ
Կը խօսի ընկ. Պ. ԶՊՈՒՔՃԵԱՆ

Այս տօնակատարութեան ներկայ պիտի ըլլայ Սէփթէմի քաղաքապետը իր խոր-հրդականներով։

Գեղարուեստական բաժին

Երգ, նուագ, արտասանութիւն եւ զանազան անակնկալներ, բարձրախօսով կը նուագուին հայկական եւ եւրոպական ընտիր եղանակներ։

Շրջանի ենթակոմիտէները եւ անհատ հայրենակիցները որոնք օթօքար չեն վարձած, կրնան առնել քս տանող թրօլէյպիւսը եւ իջնել Սէփթէմէն մէկ կայարան յետոյ, Լէ Բայօլ ասփիկանական չէնքին առջեւ։

Հայ ազատագրութեան նախաձեռնողներ մեր բոլոր հայրենակիցները սիրով կը հրաւիրուին ներկայ ըլլալու այս բացառիկ տօնակատարութեան։

Մուտքը ազատ է։



ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ կը տօնուի յառաջիկայ Նոյեմբեր 7ի գիշեր, «Միւթիւալիթէի» մեծ սրահին մէջ։

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ ԵՒ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐՈՒՆ

Կը խնդրենք մեր բաժանորդներէն արձակուրդէն առաջ փակել իրենց հաշիւները։

Այս առթիւ կը յիշեցնենք նաեւ թէ արձակուրդի առթիւ հասցէի փոփոխութեան համար անհրաժեշտ է նշանակել ՆԱԽԿԻՆ ՀԱՍՑԷՆ եւ կցել 100 փրանք։

Ընթերցողներու համար արձակուրդի բաժանորդագրութիւններ կ'ընդունինք։ Մէկ ամսուան բաժնեգինը՝ 300 ֆր.։

Վարպարեյի (Մարսէյլ) բաժանորդները կրնան իրենց վճարումները ընել ընկեր Պետիկեանի։

× Դպրոցական խնամակալութիւնը կը յայտնէ պաշտօնապէս, որ աշակերտուհիներու ընդունելութեան արձանագրութիւնները բացուած են արդէն։ Մնացները կ'ընդունուին երեքշաբթի, հինգշաբթի եւ շաբաթ օրերը, մինչեւ կէսօր։

Դիմել վարժարանի, Ռէնսի, 1 Պուլվ. տիւ Նօռ, էկլիզ Փանթէնէն 146 թիւ հանրակառքով առնելով։

ՍԳԱՀԱՆԴԷՍ
ԱՐՇԱԿ ՋՕՊԱՆԵԱՆ-Ի
ՅԻՇԱՏԱԿԻՆ

Կիրակի, 23 Յունուար, 1955
ՍԱԼ ՈՒՇԸԼԻԷՕ

Կը խնդրուի բոլոր կազմակերպութիւններէն նկատի ունենալ այս թուականը։



## « ՅԱՌԱՋ »Ի ԲԱՐԳԱՒԱՃՄԱՆ ՀԱՄԱՐ

●

Ճնորհակալութեամբ ստացանք Տիկին Փ. Լ. (Քլերմոն-Ֆերան) 2000 ֆրանք։
Պ. Ս. Սահակեանէ (Լիոն) 1000 ֆրանք։



«ՅԱՌԱՋ»Ի ՄՕՏ

ԿԸ ԳՏՆՈՒԻՆ ՀԵՏԵՒԵԱԼ ԳԻՐՔԵՐԸ.—

ՌՈՒԲԷՆԻ ՅՈՒՇԵՐԸ, 7 հատոր։ Գին 5000 ֆրանք։

ՊԱՏՄԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՆԵՐ (Ն. Ադոնց), գին 1000 ֆրանք։

ԳՐԻԳՈՐ ՆԱՐԵԿԱՑԻ, (ֆրանսերէնի թարգմանեց Լիւք Անտոն Մարսէլ, ուրիշ ժողովրդական բանաստեղծութիւններով)։ Գին 1000 ֆրանք։

Կ. ՍԱՍՈՒՆԻԻ «Պատմութիւն արդի Հայ Գրականութեան»։ Գին 800 ֆրանք։

Թղթատարի ծախքը գնողին վրայ։















- Imp. Araxes 46, rue Richer. Paris

մը ուղղած են, ընդհ. գործադուլ սարքելու համար:

Այս էլ Քեպիրի մեծ տօնը հիմնուած է այն աւանդութեան վրայ որուն համաձայն Աստուած ոչխար մը ղրկեց Աբրահամի, երբ այս վերջինը կը պատրաստուէր իր որդին զոհելու: Ամէն տարի հազարաւոր ոչխարներ կը մորթուին այս առթիւ: Մարոքի անկախութեան կուսակիցները (Իսթիքլալ) այս տարի արգիլեց տօնակատարութիւնը, իբրեւ բողոքի ցոյց՝ նախորդ Սուլթանին գահընկէցութեան դէմ:

✕ Բսան հազար Պէրպէրիներ համախմբուած են Ռապաթի մէջ, իրենց հաւատարմութիւնը յայտնելու համար Սուլթանին: Կը վախցուի որ քաղաքացիական պատերազմ ծագի:

Երկուշաբթի օր բաղդատաբար հանդարտ էր կացութիւնը, բայց փոքր ռումբ մը պայթեցաւ Քազապլանքայի մէկ արուարձանին մէջ եւ հրդեհ ծագեցաւ Ռապաթի մօտ:

Թունուզի մէջ ալ յաճախ կը պատահին այսպիսի դէպքեր, սպասելով նոր դահլիճին գործունէութեան եւ ծրագրուած ինքնավարութեան հաստատման: Նոր վարչապետը, Թահար պէն Ամմար Փարիզ պիտի գայ յառաջիկայ շաբթու, ընկերակցութեամբ երեք նախարարներու: Թերթերը կը գրեն թէ «Այն Միսպարէք»ի տօնը խանդավառութեամբ տօնուեցաւ այս տարի եւ հազարաւոր ոչխարներ մորթուեցան ամբողջ Թունուզի մէջ:

## ՎԱՐՉԱՊԵՏԸ ԱԶԳ. ԺՈՂՈՎԻՆ ԱՌՋԵՒ

Երէկ, երեքշաբթի, Պ. Մենտէս-Ֆրանս Ազգ. Ժողովին ներկայանալով, երկու կարեւոր յայտարարութիւններ ըրաւ: Առաջինը կը վերաբերէր դահլիճին տնտեսական եւ ելմտական ծրագրին, որուն համար որոշ լիազօրութիւն կը պահանջէ. երկրորդը՝ Թունուզի եւ Մարոքի:

Կառավարութիւնը կ'ուզէ որ մինչեւ Օգոստ. 27 յետաձգուին այս առթիւ արձանագրուած հարցապնդումները: Օրակարգի վրայ կայ նաեւ Սահմանադրութեան վերաքննութեան խնդիրը: Գալով Եւրոպայի Միացեալ բանակի ծրագրին, Պ. Մենտէս-Ֆրանս ուրբաթ օր պիտի առաջարկէ նախարարական խորհուրդին ձեւ մը գտնել, ազգային մեծամասնութիւն մը ապահովելու համար:

Վարչապետը պիտի մասնակցի վեց գինակիցներու ժողովին, որ կ'ուզէ իմանալ Ֆրանսայի տեսակէտները:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԱՆԳԼԻՈՅ նախորդ վարչապետը, էթլի եւ աշխատաւորական կուսակցութեան ձախ թեւին առաջնորդը՝ Պիւըն, պատուիրակութեան մը հետ ճամբայ ելան դէպի Մոսկուա եւ Փեքին, քննական պտոյտ մը կատարելու համար: Պատուիրակութիւնը երկու օր պիտի մնայ Մոսկուա, իսկ երեք շաբաթ՝ Չինաստանի մայրաքաղաքին մէջ: Մեկնած ատեն Պ. Էթլի բացատրեց թէ կ'ուզեն ուսումնասիրել նոր Չինաստանի կացութիւնը, եւ թէ «կը յուսան կարելի եղածին չափ շատ բան տեսնել»:

ՊՈԼՍԷՆ կը հեռագրեն թէ 18 հոգի խեղդուեցան Պալըքէսէրի նահանգին մէջ, ողողումներու հետեւանքով:

40 ՀՈԳԻ ՄԵՌԱՆ Սայկոնի մօտ, (Հնդկաչին) պահականոցի մը դէմ կատարուած բուռն ցոյցի մը հետեւանքով: Զոհերը մեծ մասով կիներ եւ մանուկներ են:

ՎԻՇԻԻ ՄԷՋ անծանօթներ յարձակելով գոհարավաճառի մը խանութին վրայ, խոշտանգեցին տէրը եւ անհետացան, մէկ միլիոն ֆրանքի գոհարեղէն գողնալով: Յանութը կը գտնուէր Կազինոյին մօտ: Զարագործները վիրաւորած եւ ելեկտրական թելերով կապած էին գոհարավաճառին սրունքները:

ԻՍԼԱՄԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԱԺՈՂՈՎ մը տեղի կ'ունենայ Մէքքէի մէջ: Գլխաւոր նպատակն է միութիւն հաստատել արաբական պետութեանց եւ իսլամական աշխարհի մնացեալ մասին հետ: Շարժման գլուխը կանգնած են Արաբիոյ Թագաւորը, Եգիպտոսի եւ Փաքիստանի վարչապետները: Կը մասնակցին իսլամական բոլոր պետութեանց պատուիրակները:

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

Կ. Ա. ԳԵՐՄԱՆԻԱ. — Ռուբէնի եօթը հատորներէն ոեւէ մէկը առանձին չի ծախուիր:

## ՍԵԲԱՍՏԻՈՅ ՄՈՒՐԱՏ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑԸ ԿԸ ՓՆՏՌԷ

Երկրորդ, սան մը Սեւրի Մխիթարեան գոլէժը ուսանելու, 1954 Հոկտեմբերի վերամուտէն սկսեալ:

Թեկնածուն պէտք է լրացնէ հետեւեալ պայմանները:

Ա.—Պատանին պէտք է ծագումով Սեբաստիոյ նահանգի գիւղերէն կամ քաղաքներէն ըլլայ:

Բ.— 11-12 տարեկան, գիտնայ հայերէն խօսիլ:

Գ.— Ունենայ բժշկական վկայագիր եւ իր յաճախած դպրոցի տեսուչէն վկայական, իբրեւ յառաջադէմ եւ ապագայ խոստացող:

Դ.— Պէտք է որբ կամ չքաւոր ընտանիքի զաւակը ըլլայ:

Մէկէ աւելի թեկնածուներու պարագային Մխիթարեան Հայրերու հովանաւորութեան տակ, մուտքի քննութիւն պիտի անցընեն եւ յաջողագոյնը պիտի որդեգրուի ուսումնասիրացի կողմէ, վեց տարուան համար, մինչեւ պաքալոռիա:

Կը հրաւիրենք Ֆրանսայի բոլոր վայրերու հայրենակիցներէն եւ մեր մասնաճիւղերէն որ կարելի եղածին չափ շուտ ներկայացնեն ընդունակ պատանի մը:

Եթէ թեկնածուն Մարսէյլի շրջանէն է, դիմել՝ Պ. Մ. Մեսիկեանի՝

20 Rue Thubaneau, Marseille.

Եթէ Տեսինէն է, գրել Պ. Մ. Պարտաքճեանի՝

28 Rue Arago, Decines (Isère)

Այլ վայրերէ գրել Յ. Յակոբեանի՝

60, Av. A. Briand (Bagneux (Seine)

Փարիզի Կեդր. վարչութեան հասցէով:

Թեկնածուներուն մասին տեղեկացնել Փարիզի Կ. վարչութեան, ամէնէն ուշը մինչեւ 20 Օգոստոս:

Սեբ. Մուրատ Ուսումնասիրացի

Կեդր. վարչութիւն





## ՀԱՅԱՑԵԱԼ ՊԱՏԱՐԱԳ ԱՆԻԷՐԻ ՄԷՋ

Այս կիրակի Վերափոխման տօնակատարութեան առթիւ, երեկոյեան ժամը 6ին ձայնաւոր պատարագ պիտի մատուցուի Ս. Յովսէփայ մատրան մէջ 13 Ավընիւ Լամարթին:

Պիտի կատարուի նաեւ խաղողօրհնէքի արարողութիւն:

Ս. Խաչի Ժողովրդապետութիւն

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ կը տօնուի յառաջիկայ Նոյեմբեր 7ի գիշերը, «Միւթիւալիթէի» մեծ սրահին մէջ:

ԴՊՐՈՑԱՍԷՐԻ խնամակալութիւնը կը յայտնէ պաշտօնապէս, որ աշակերտուհիներու ընդունելութեան արձանագրութիւնները բացուած են արդէն: Ծնողները կ'ընդունուին երեքշաբթի, հինգշաբթի եւ շաբաթ օրերը, մինչեւ կէս օր:

Դիմել վարժարանը, Ռէնսի, 1 Պուլվ. տիւ Նօռ, էկլիզ Փանթէնէն 146 թիւ հանրակառք առնելով:

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Լիոնի եւ շրջ. Ազգային Միութիւնը կը յայտարարէ Ս. Աստուածածնայ տօնին առթիւ, Օգոստ. 15ին կիրակի օր, Լիոնի Ս. Աստուածածին եկեղեցւոյ մէջ հանդիսաւոր պատարագ պիտի մատուցուի, նոյնպէս մատաղի եւ խաղողի օրհնութիւն պիտի կատարուի:

Կը հրաւիրուի Լիոնի եւ շրջ. բարեպաշտ Հայութիւնը ներկայ ըլլալու Ս. Պատարագի, ինչպէս նաեւ խաղողի եւ մատաղի օրհնութեան:

Այն հաւատացեալները որոնք կը փափաքին մատաղի նուիրատուութեան բաժին առնել, հաճին եկեղեցւոյ խորհրդարանը յանձնել իրենց նուէրները փոխանատացագրի:







ՍԳԱՀԱՆԴԷՍ

ԱՐՇԱԿ ՋՕՊԱՆԵԱՆ-Ի

ՅԻՇԱՏԱԿԻՆ

Կիրակի, 23 Յունուար, 1955

ՍԱԼ ՌԻՇԸԼԻԷՕ

Կը խնդրուի բոլոր կազմակերպութիւններէն նկատի ունենալ այս թուականը:



## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

Արձանագրութիւնները բացուած են 1954-1955 ուսումնական տարեշրջանի համար: Կը խնդրուի բոլոր հայ ծնողներէն, որոնք կը փափաքին ազգային այս դարաւոր հաստատութեան մէջ ապահովել իրենց զաւակներուն տոհմային եւ ֆրանսական կրթութիւնը, օր առաջ, դիմել տեսչութեան, արձանագրութեան համար:

Մուրատեան վարժարանի այցելութիւնները՝ Շաբաթ եւ Երկուշաբթի օրերը եւ ժամադրութեամբ:

Direction Collège Arménien

26, Rue Troyon - Sèvres (S. O.)

Tél. : OBS. 18-28







- Imp. Araxes 46, rue Richer. Paris

«ՅԱՌԱՋ» ՁԻ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԻՐ Երեք-շաբթի օր, Օգոստ. 15ի արձակուրդին առթիւ (Աստուածածին) :

## ՀԱԿԱԲՈԼՇԵՒԻԿ ՊԱՅՔԱՐԸ Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒՆ ՄԷՋ

Ինչպէս գրած էինք, Մ. Նահանգներու ծերակոյտը միաձայնութեամբ քուէար-կեց օրինագիծ մը որ ապօրէն կը հռչակէ համայնավար կուսակցութիւնը:

Այս որոշումը մեծ խրախուսում պատ-ճառած է պաշտօնական շրջանակներու մէջ, որոնք շատ համաձայն չէն ծայրա-յեղ միջոցներու: Կառավարութիւնը եւ նախագահն ալ յարմար չեն դատեր այդ-պիսի օրէնք մը, որ կրնայ ստորերկրեայ գործունէութեան մղել կարմիրները: Օ-րինագիծը օրէնքի կը վերածուի, եթէ Երեսփ. ժողովն ալ վաւերացնէ: Կը կար-ծուի թէ նախագահը ի հարկին պիտի գործադրէ իր վեթոյի իրաւունքը:

Ամերիկեան թերթերը կը գրեն թէ այս խնդիրը կը յուզուէր քանի մը տարիէ ի վեր:

× Ֆիլատելֆիայի մէջ երդուեալ դա-տաւորները յանցաւոր հռչակեցին ինը համայնավար առաջնորդներ, այն ամ-բաստանութեամբ թէ կ'ուզէին բռնի տա-պալել օրուան կառավարութիւնը: Ատեա-նը կը բաղկանար եօթը կիներէ եւ հինգ այրերէ: Խորհրդակցութիւնը տեւեց ինը ժամ, պատասխանելու համար բոլոր հարցումներուն: Ամբաստանեալներէն իւ-րաքանչիւրը ենթակայ է հինգ տարի բանտարկութեան եւ 10.000 տոլար տու-գանքի:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՉԻՆԱՍՏԱՆԻ վարչապետը, Չու Ան Լէ յայտարարեց թէ ազգը պիտի փրկէ Ֆոր-մոզան եւ թէ հետեւանքները շատ ծանր պիտի ըլլան, եթէ միջամտութիւն կա-տարուի: Աւելորդ է ըսել թէ ազգարա-րութիւնը ուղղուած է Մ. Նահանգներու դէմ:

16 ԱՇԱԿԵՐՏՆԵՐ մեռան իրենց երեք ուսուցիչներուն հետ, երբ զբօսական կառք մը Արտէշի գետը թաւալեցաւ ե-րեսուն մեթր բարձրութենէ մը, ջախ-ջախուելով ժայռերուն վրայ: Վիրաւոր-ներուն թիւը կը հաշուեն 26, որոնց մեծ մասը շատ ծանր, նոյնիսկ մահամերձ:

ԱՅՍՕՐ, 15 ՕԳՈՍՏ., հանդիսաւորա-պէս պիտի տօնուի զինուորական գործո-ղութեան մը տասնամեակը: 1944 օգոստ. 15ին առտուն կանուխ դաշնակից զին-ուորներ ցամաք կ'ելլէին Փրովանսի ա-փերուն վրայ: Այդ օրը ռազմական խա-րիսխներ դարձած էին Սէն Թրոփէզը, Քավալէռը, Քոնոտէլը եւ հարեւան կղզի մը: Առտուն ժամը 8ին ահռելի թնդանո-թաձգութիւն մը կը սկսէր:

ՄՈՍԿՈՒԱՅԻ անթէլը կը ծանուցանէ թէ կառավարութիւնը որոշած է աւել-ցնել կարգ մը հողագործական արտադրու-թեանց գիները — գետնախնձոր, բան-ջարեղէն, պտուղներ — քաջալերելու համար հողագործները, որոնց վաստակը անբաւական է, վասն զի ծանր ծախքերու կ'ենթարկուին, պահելու համար այդ ուտելիքները ձմրան եւ գարնան եղանակ-ներուն:

ԵՐԿՈՒ ԿԱՍԿԱԾԵԼԻՆԵՐ ձերբակալուե-ցան Զուիցերիոյ մէջ, այն ամբաստանու-թեամբ թէ լրտեսութիւն կը կատարէին Ժընեւի խորհրդաժողովին առեն:

ԱՒՍՏՐԻՈՅ չորս դաշնակից մարզպան-ները միաձայնութեամբ մերժեցին երկու օրէնքներ, որոնց համաձայն կը վերա-դարձուէին նախկին Նացիներու ստաց-ուածքները եւ կենսաթոշակներ կը սահ-մանուէին: — Խ. Միութիւնը հաւանեցաւ որ Չորս Մեծերու նոր ժողով մը գումար-ուի, քննելու համար Աւստրիոյ հաշտու-թեան դաշնագիրը: Մասկուա միշտ կը պնդէ իր կարգ մը պահանջներուն վրայ:

ԳՈՐԾԱԴՈՒԼԻ հետեւանքով շատ մը խռովութիւններ ծագեցան Պաւարիոյ մէջ:

ԿԻՊՐՈՍԻ Յոյները որոշեցին սաստկա-ցնել պայքարը, կցելու Յունաստանի կղզին համար: Բազմաթիւ հրապարակային ժողովներ պիտի գումարուին, օգոստ. 20-էն սկսեալ:

## « ՅԱՌԱՋ »Ի ԲԱՐԳԱՒԱՃՄԱՆ ՀԱՄԱՐ

★

Շնորհակալութեամբ ստացանք Լիոնէն, (Ոմն) հազար ֆրանք: Պ. Նազարէթեանէ (Պալանքուռ) 500 ֆրանք:

## ՊԱՏԱՐԱԳ ԵՒ ԽԱՂՈՂԻ ՕՐՀՆՈՒԹԻՒՆ

Փարիզի Հայոց եկեղեցւոյ Հոգաբար-ձութիւնը կը ծանուցանէ թէ Ս. Աստուա-ծածնի Վերափոխման տօնին առթիւ այս կիրակի հանդիսաւոր պատարագ պիտի մատուցուի եւ պիտի կատարուի խաղողի օրհնութիւնը:

Երկուշաբթի Պատարագ Մեռելոցի:

Կը հրաւիրուի հասարակութիւնը:

## ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՃԱՇ

Համախարբերդ. Միութեան Վալանսի մասնաճիւղի վարչութիւնը ,14րդ պատ-գամաւորական ժողովին առթիւ ճաշ մը սարքած է այս կիրակի կէսօրէն վերջ ժա-մը 1.30ին, Հայ Երիտասարդաց սրահին մէջ:

ՄՕՏ ՕՐԷՆ

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ՄԵԾ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նիսի «Գէորգ Չաւուշ» խումբին, նուիրուած ԽԱՆԱՍՈՐԻ արշաւանքին եւ Սասնոյ ա-պստամբութեան 50ամեակին:

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

Արձանագրութիւնները բացուած են1954 1955 ուսումնական տարեշրջանի համար: Կը խնդրուի բոլոր հայ ծնողներէն, ո-րոնք կը փափաքին ազգային այս դարա-ւոր հաստատութեան մէջ ապահովել ի-րենց զաւակներուն տոհմային եւ ֆրան-սական կրթութիւնը, օր առաջ, դիմել տեսչութեան, արձանագրութեան համար:

Մուրատեան վարժարանի այցելու-թիւնները՝ Շաբաթ եւ Երկուշաբթի օրերը եւ ժամադրութեամբ :

Direction Collège Arménien
26, Rue Troyon - Sèvres (S. O.)
Tél. : OBS. 18-28

## ԿՈՄՍԻ

(ՎԱՀԱՆ ՓԱՓԱԶԵԱՆ)

«Խոնարհ հերոսները» եւ «Իմ Յուշերը» տրամադրելի են տակաւին :

Դիմել Գավէզեանի՝

Cavezian, 37 Rue de Trevise
Paris (9e)

ՍՏԱՑԱՆՔ

ՍՏԵՓԱՆՆԵՍ ՆԱԶԱՐԵԱՆ ԵՒ ԴՈՐՊԱՏ (գիտական - վաւերական աղբիւր-ների հիման վրայ): Գրեց՝ Արտաշէս Ա-բեղեան, Տպ. 1954 Պուէնոս Այրէս:

Գին՝ 1.50 տոլար:

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ ԵՒ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐՈՒՆ

Կը խնդրենք մեր բաժանորդներէն ար-ձակուրդէն առաջ փակել իրենց հաշիւ-ները :

Այս առթիւ կը յիշեցնենք նաեւ թէ ար-ձակուրդի առթիւ հասցէի փոփոխութեան համար անհրաժեշտ է նշանակել ՆԱԽԿԻՆ ՀԱՍՑԷՆ եւ կցել 100 փրանք :

Ընթերցողներու համար արձակուրդի բաժանորդագրութիւններ կ'ընդունինք : Մէկ ամսուան բաժնեգին՝ 300 ֆր. :

Վարպարելի (Մարսէյլ) բաժանորդները կրնան իրենց վճարումները ընել ընկեր Պետիկեանի :

## «ՅԱՌԱՋ»Ի ՄՕՏ

ԿԸ ԳՏՆՈՒԻՆ ՀԵՏԵՒԵԱԼ ԳԻՐՔԵՐԸ.—

ՌՈՒԲԷՆԻ ՅՈՒՇԵՐԸ, 7 հատոր: Գին 6000 ֆրանք:

ՊԱՏՄԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ-ՆԵՐ (Ն. Ադոնց), գին 1000 ֆրանք :

ԳՐԻԳՈՐ ՆԱՐԵԿԱՑԻ, (ֆրանսերէնի թարգմանեց Լիւք Անտռէ Մարսէլ, ուրիշ ժողովրդական բանաստեղծութիւննե-րով): Գին 1000 ֆրանք:

Կ. ՍԱՍՈՒՆԻի «Պատմութիւն Արեւմտա-հայ արդի Գրականութեան» Գին 800 ֆր. :

Թղթատարի ծախքը գնողին վրայ :

ՍԳԱՀԱՆԴԷՍ

## ԱՐՇԱԿ ՋՕՊԱՆԵԱՆ-Ի

ՅԻՇԱՏԱԿԻՆ

Կիրակի ,23 Յունուար, 1955

ՍԱԼ ՌԻՇԸԼԻԷՕ

Կը խնդրուի բոլոր կազմակերպութիւն-ներէն նկատի ունենալ այս թուականը :

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

Երաժշտապետ Լ. ՃԷՐԱՀԵԱՆԻ «ԱՌՋԵՌՆ ՏՕՆԱԿԱՐԳ »Ը

Որ կը պարունակէ գիշերային, առա-ւօտեան եւ Ս. Պատարագի երգեցողու-թիւնները, հինգ տաղաւարներու, Տեառն-ընդառաջի, Մեծ Պահոց կիրակիներու, Շաբաթ երեկոներու, Խաղաղականի ե-կեսցէի եւ հանգստեան շարականները՝ հանդերձ ծանօթութեամբ : Անհրաժեշտ առաջնորդ մը եկեղեցականներու եւ աշ-խարհականներու: Իր տեսակին մէջ ան-նախընթաց մատեան :

Գին՝ 500 ֆր. Թղթատարի ծախքով 550 ֆրանք: Յանձնարարութիւնք կանխիկ վը-ճարումով: Դիմել՝

Levon Djérahian
32 bis, Bld. des Fauvettes
Beaumont-Marseille.



## ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ



- Imp. Araxes 46, rue Richer. Paris

## ՆՈՐ ԴԷՊՔԵՐ ՊՐԱԶԻԼԻՈՅ ՄԷՋ

Առջի օր նոր դէպքեր պատահեցան Պրազիլիոյ մէջ, նախագահ Վարկասի անձնասպանութեան առթիւ: Մէկ հոգի սպաննուեցաւ, 38 հոգի վիրաւորուեցան: Երկու օրուան մէջ սպաննուած են չորս, վիրաւորուած՝ 83 հոգի: Դշ. օր առաջին ընդհարումը պատահեցաւ Ռիօ տը Ժանէյրոյի օդակայանին մէջ, երբ անձնասպան նախագահին մարմինը իր ծննդավայրը կը փոխադրուէր: Ոստիկանութիւնը կրակ բացաւ ցուցարարներուն վրայ: Երբ ետ կը մղուէին, ցուցարարները սկսան մոնչել եւ նախատել ոստիկանութիւնը: Յետոյ ոստիկանական կառք մը գրաւելով հրկիզեցին: Ոստիկանութիւնը ստիպուեցաւ նոր ուժեր կանչել, բազմութիւնը ցրուելու համար: Բայց այս անգամ խռովութիւններ ծագեցան օդանաւային նախարարութեան առջեւ: Կռիւ մը տեղի ունեցաւ պաշտօնեաններուն եւ ցուցարարներուն միջեւ: Ոստիկանութիւնը նորէն կրակ բացաւ, երբ ցուցարարները կը փորձէին բռնել կառք մը որ օդանաւային սպաներ կը փոխադրէր:

Տասնեակ հազարաւոր քաղաքացիներ թափօր կազմած էին երկու քիլոմեթր երկայնութեամբ, երբ նախագահին մարմինը օդակայան կը փոխադրուէր: Տեղ-տեղ դագաղը կը կրէին զօրավարներ եւ նախարարներ: Բանուորներ ալ ուզեցին կրել դագաղը եւ քշեցին այն կառքերը որոնց մէջ նստած էին Վարկասի ընտանիքին անդամները: Նախագահին քենին յանկարծամահ եղաւ, երբ իմացաւ անոր անձնասպանութիւնը:

Հիւանդանոց փոխադրուեցաւ պալատին հրամանատարը, զօր. Քասթօր, որ առընճանակին ձայնը լսած առեն նախագահին սենեակը վազած եւ նուաղած էր, տեսնելով անոր դիակը: Կառավարութիւնը որոշեց ութ օր սուգ պահել:

Վատիկանի պաշտօնաթերթը կը դատապարտէ նախագահին անձնասպանութիւնը, իբրեւ հակաքրիստոնէական արարք:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՓԱՐԻԶԻ ազատագրութեան տասնամեակի հանդիսութիւնները վերջացան երէկ, հինգշաբթի, շքեղ զօրահանդէսով մը: Օդանաւեր ալ կը սաւառնէին, հակառակ օդին անյարմարութեան: Գիշերը սարքուած էին հրախաղութիւններ, ժողովրդական պարեր եւ ուրիշ խրախճանքներ:

· 12·000 ԹՈՆ ՁՈՒԿ մեռած է Սէնի մէջ, իբրեւ հետեւանք չնչահեղձութեան, անցեալ յունիսէն ի վեր: Թերթերը անհրաժեշտ կը գտնեն մաքրել գետին աւազանը, փրկելու համար այս մանր ձուկերը:

ՕԴԵՐՈՒ ԲԱՐՈՒՈՔՄԱՆ յոյս չեն տեսներ մասնագէտները: Օգոստ. 24ը ամէնէն ցուրտ օրն էր Փարիզի համար, 1873էն ի վեր: Բազմաթիւ այգիներ վնասուած են միջին եւ հարաւային Ֆրանսայի մէջ: Անգլիոյ մասնագէտները կ'ըսեն թէ այսքան պէշ ամառ տեսնուած չէր 1841էն ի վեր: Օգոստոսի առաջին 24 օրերէն 21 օրը անձրեւ տեղացած է Լոնտոնի եւ ամբողջ երկրին մէջ: Իտալիոյ Փօ գետը երբեք մեթր բարձրացած է:

ԸՄԲՇԱԿԱՆ Ե. մրցաշարքը վերսկսաւ Պեռնի մէջ (Զուիցերիա): Տասը հազար մեթր վազքը շահեցաւ Զաթոփեք, 28 վ. 58 երկվայրկեանէն: Մրցորդներուն մէջ կը յիշուի հայ մը, Տէրտէրեան: Խ. Միութենէն ալ ախոյեաններ կան, այր թէ կին:

ԱԶԳ. ԺՈՂՈՎԸ երէկ սկսաւ քննել Մարոքի եւ Թունուզի խնդիրները: Տասնըհինգ հոգի խօսք առած էին:

ՊՈԼՍԷՆ կը հեռագրեն թէ 16 բանուորներ մեռան, 22 հոգի ալ վիրաւորուեցան Ատանայի մէջ, երկու կառախումբերու ընդհարման հետեւանքով:

ԴԱՄԱՍԿՈՍԻ միջազգային տօնավաճառին լիբանանեան տաղաւարը փլաւ առջի օր: Մէկ հոգի մեռաւ, եօթը հոգի վիրաւորուեցան: Տօնավաճառը պիտի բացուին սեպտ. 2ին:

ԹՈՒՐՔԻՈՅ հանրապետութեան նախագահը Եուկոսլաւիա պիտի երթայ սեպտ. 1ին, մնալով ութ օր:



Գ. Մկրտիչ Սարգիսեանց եւ զաւակները, տէր եւ տիկին Պետրոս Սարգիսեանց եւ զաւակները եւ Լեւոն Սարգիսեանց, տէր եւ տիկին Սարգիս Բաղրամեան եւ զաւակները (Խ. Միութիւն, այրի տիկին Աստղիկ Բաղրամեան եւ զաւակները (Խ. Միութիւն), տէր եւ տիկին Թաթիկեան, ինչպէս նաեւ Քիպրիթեան, Գալուստեան եւ Զաքարեան (Խ. Միութիւն) ընտանիքները սրտի խորունկ ցաւով կը ծանուցանեն իրենց կնոջ, մօր, մեծ մօր, քրոջ, հարսին եւ ազգականին՝

ՏԻԿԻՆ ԱՆՆԱ ՄԿՐՏԻՉ ՍԱՐԳԻՍԵԱՆՑԻ
(Ծնեալ Զաքարեան)

մահը, որ տեղի ունեցաւ 24 օգոստ.ին 64 տարեկան հասակին, յետ կարճատեւ հիւանդութեան:

Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի այսօր, ուրբաթ ժամը 2·30ին, Պուլոնյը – Պիյանքուրի գերեզմանատունը:

ԾԱՆՕԹ.— Մասնաւոր մահազդ ղրկուած չըլլալով, կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել:





Այրի տիկին Ատրինէ Պարոնվարդեան, Գրիգոր Պարոնվարդեան եւ զաւակները (Պոլիս), Մանուկ Պարոնվարդեան, Այրի տիկին Զարդար Վելէտեան եւ զաւակները, Այրի տիկին Վիքթորիա Զատրճեան (Կարտան), տէր եւ տիկին Յովակիմեան (Ամերիկա), տէր եւ տիկին Տէրտէրեան (Ամերիկա), Սիրարփի Ճիւհէրեան (Սեբաստիա), տէր եւ տիկին Վարդան Շալճեան (Պաքու), Տէր եւ տիկին Նուպար Քիզիրեան եւ զաւակները, տէր եւ տիկին Բարսեղ Սերճանեան և զաւակները, տէր և տիկ. բժ. Եր. Խաթանասեան և զաւակները Այրի տիկին Սիրվարդ Զատրճեան եւ զաւակը, Գարուն Խաթանասեան, Խաչիկ Խաթանասեան, նոյնպէս Քիզիրեան, Շահրիկեան, Կարապետեան, Պարոնվարդեան, Սայլանճեան եւ տիկին Նարլեան ընտանիքները խոր կսկիծով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն եւ ազգականին՝

ԵՐՈՒԱՆԴ ՊԱՐՈՆՎԱՐԴԵԱՆԻ

մահը, որ տեղի ունեցաւ 24 օգոստ.ին 65 տարեկանին:

Յուղարկաւորութիւը կը կատարուի շաբաթ առաւօտ ժամը 10ին Փարիզի Հայոց եկեղեցին, 15 ժան Կուժոն, եւ մարմինը պիտի ամփոփուի Փանթէնի գերեզմանատունը:

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել:

ՅԵՏԱՁԳՈՒԱԾ է Լիոնի Համաչարսանճաքի Հայր. Միութեան դաշտահանդէսը, որ տեղի պիտի ունենար այս կիրակի:



ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Ֆր. Կ. Խաչի Մարսէյլի մասնաճիւղի տարեկան մեծ պարահանդէսը դեկտ. 18ին, Սփլանտիտի շքեղ սրահներուն մէջ:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ.—Հ. Յ. Դ. Պոմոնի «Զաւարեան» ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս շաբաթ ժամը ճիշդ 21ին, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

### ԾՆՈՒՆԴ

Միլանոյէն տէր եւ տիկին բժ. Արամայիս Սրապեան ուրախութեամբ կը ծանուցանեն իրենց անդրանիկ զաւկին ԱՐԱՔՍԻ ծնունդը, 18 օգոստ. 1054:

### Կ. ԽԱՉ

Օգնութեան Մարմնի արձակուրդի կայանը պիտի փակուի յառաջիկայ երկուշաբթի, 6 սեպտ.ին: Նոյն օրը պիտի վերադառնան օգափոխութեան Բ. խումբի մանուկները: Հետեւաբար, ծնողները պէտք է մեր կեդրոնը (15 ռիւ ժան Կուժոն) ըլլան, սեպտ. 6ին, կէսօրէ ետք ժամը 6ին, դիմաւորելու համար իրենց զաւակները:



ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

Հայ դպրոցներուն եւ ընտանիքներուն կողմէ փնտռուած գիրք մը, Արմենակ Գրաճեանի (Ա. Մանկասէր)

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ԲԵՄԸ

Պատկերազարդ հատոր մը, որ կը պարունակէ մանկական նոր արտասանութիւններ, ձայնագրեալ երգեր, մենախօսութիւններ, օփերէթներ, տրամախօսութիւններ, առակներ, զաւեշտներ և պատմուածքներ:

350 մեծադիր էջ, գունաւոր պատկերներով, ընտիր թուղթի վրայ:

Գին՝ Սուրիա եւ Լիբանան 8 լիր. ոսկի: Արտասահման՝ երեք տոլար:

Հասցէ.—
Arménak Kradjian, 11, Rue Kheder
Nor-Hadjine, Beyrouth (Liban)









- Imp. Araxes 46, rue Richer. Paris

## ՄԱՐՈՔԻ ԵՒ ԹՈՒՆՈՒԶԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

### ԱԶԳ. ԺՈՂՈՎԸ ՎԱՒԵՐԱՑՈՒՑ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆ ՈՒՂԵԳԻԾԸ

Ազգ. ժողովը 122ի դէմ 451 ձայնով վաւերացուց կառավարութեան նոր քա — ղաքականութիւնը Մարոքի եւ Թունուզի մասին: Այս առթիւ մանրամասն տեղե — կագիր մը կազմած էր Հիւս. Ափրիկէի գործերու նախարարը, Պ. Ֆուշէ, որ պա — տասխանեց բոլոր քննադատութեանց: Թունուզի մասին ըսաւ թէ միակ ներկա — յացուցչական կուսակցութիւնն է Նոր Տեսթուրը, ինչպէս կ'ընդունի Պէյն ալ: Կառավարութիւնը պիտի շարունակէ պաշտպանել Ֆրանսայի շահերը Մարոքի եւ Թունուզի մէջ: Կառավարութիւնը կ'աշխատի վանել ամէն բան որ կրնայ վնասել Ֆրանքօ-իսլամական բարեկամու — թեան զարգացման: Թունուզի հետ կնքը — ւած պայմանագիրներով պիտի նուիրա — գործուի Ֆրանսայի զինուորական ներ — կայութիւնը: Ֆրանսացիներու իրաւունք — ներն ալ պիտի պաշտպանուին»:

Վարչապետն ալ խօսք առնելով, մաս — նաւորապէս ծանրացաւ Մարոքի հարցին վրայ: Ըսաւ թէ կառավարութիւնը «բար — ւոքելով հանդերձ նախորդ Սուլթանին եւ ընտանիքին վիճակը, պիտի չվերահաս — տատէ զայն գահուն վրայ. պիտի աշխա — տի հաշտեցնել Մարոքի ժողովուրդին զանազան հատուածները, առաջնորդելով զանոնք վարելու իրենց սեփական գործե — րը: Մօտերս խօսակցութիւններ պիտի սկսին: Համախորհուրդ Սուլթան Արա — ֆայի հետ, կարելի եղածին չափ շուտով ինքնավարութեան պիտի առաջնորդենք Մարոքը»:

Գաղթային նախարարը հաւաստեց թէ ի հարկին պիտի աշխատին Ատլանտեան դաշինքին մէջ առնել Մարոքը եւ Թու — նուզը:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

15 ՌՈՒՍԱԿԱՆ ՄԱՐՏԱՆԱՒԵՐ ճամբայ ելան դէպի Նորվեկիոյ ջուրերը: Իրազեկ — ներ դիտել կուտան թէ Բ. աշխարհամար — տէն ի վեր առաջին անգամ է որ այսքան բազմաթիւ խորհրդային մարտանաւեր կ'երեւան իրենց մարզանքի սովորական [illegible]

ԿԱՐՄԻՐ ՉԻՆԱՍՏԱՆԻ [illegible] 40 զինուորներ արշաւանք մը կատարեցին դէպի Քեմոյ կղզին, որ կը գտնուի չինական ցամաքին դիմացը: Փեքինի ան — թելը կ'ըսէ թէ արշաւողները սպաննեցին 11 ազգայնական զինուորներ եւ մէկ հոգի ալ գերի բռնեցին, մեկնելէ առաջ: Այս գործողութիւնը նախապատրաստութիւն մը կը համարուի Ֆորմոզայի դէմ ծրա — գրուած արշաւանքին:

ԳԱՀԻՐԷԻ ոստիկանութիւնը առջի օր բուռն ընդհարում մը ունեցաւ Իսլամ Եղբայրներուն հետ, Ռոտա կղզիին մէջ: Եօթը ոստիկաններ վիրաւորուեցան, երբ ազգայնական ուսանող մը կը փորձէր ճառ մը խօսիլ կառավարութեան դէմ մզկիթին առջեւ: Տասը ցուցարարներ ձերբակալուեցան: Իսլամ Եղբայրութիւնը որ 500.000 անդամներ կը հաշուէ, անդր — դատ կը գտնէ Անգլիոյ հետ կնքուած համաձայնութիւնը Սուէզի մասին:

ԱՒՍՏՐԻՈՅ վարչապետը ճառ մը խօսե — լով Խորհրդարանական Միութեան հա — մագումարին բացման առթիւ, խնդրեց պատգամաւորներէն որ Աւստրիոյ ազա — տութիւնը եւ անկախութիւնը պահանջեն իրենց խորհրդարաններուն մէջ, երբ ի — րենց երկիրները վերադառնան:

ԳՈՀԱՐԵՂԷՆԻ եւ մուշտակի գողու — թիւններ յաճախադէպ դարձած են Նիսի Քանի եւ շրջակայ քաղաքներու մէջ: Եր — կու շաբթուան ընթացքին ինը կարեւոր գողութիւններ պատահած են: Տեղական թերթերը կը գրեն թէ գողերն ալ «ճէն — թըլմէն»ներ են, ինչպէս իրենց զոհերը..

ՕԴԸ ՔԻՉ ՄԸ չակուած է Փարիզի մէջ: Խարուսիկ արեւ մը կ'երեւայ երբեմն: — Հնդկաստանի Գանդէս գետը յորդելով կը սպառնայ ոչնչացնել 90.000 քառ. քլմ. տարածութիւն, ուր կ'ապրին քանի մի — լիոն բնակիչներ:



Այրի տիկին Աստղիկ Գալայճեան եւ զաւակները խորունկ կսկիծով կը ծանու — ցանեն իրենց ամուսնոյն եւ հօր՝

ՅԱԿՈԲ ԳԱԼԱՅՃԵԱՆԻ

մահը, որ տեղի ունեցաւ օգոստ. 27ին, յետ երկարատեւ հիւանդութեան, 47 տա — րեկան հասակին:

Յուղարկաւորութիւնը պիտի կատար — ուի իր բնակարանին մէջ, Վուա տիւ Մա — ռէշալ, Վիթրի սիւր Սէն, երկուշաբթի, 31 օգոստ. ժամը 10.30ին: Մարմինը պի — տի ամփոփուի Վիլժուիֆի գերեզմանա — տունը:

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել:



### ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

Ջերմապէս կը խնդրուի մեր գործա — կալներէն և բարեկամներէն Յառաջի չէք — փոստալի թիւին վրայ չղրկել գումարներ որոնք կապ չունին թերթին հետ: Այդ կարգի գումարներուն համար կարելի է մանտա-քարտ գործածել: Վարչութիւն

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Մայր եկեղեցիի Կրօն. Ընկերակցու — թիւնը կը ծանուցանէ թէ՝ կնունքի, պը — սակի, յուղարկաւորութեան եւ հոգե — հանգստեան համար պէտք է կանխապէս եկեղեցիի քարտուղարութեան հետ ժա — մադրուիլ, անձամբ, նամակով կամ հե — ռախօսելով 339, Ավընիւ տիւ Փրատօ: Հեռախօս՝ Փրատօ 84 – 70: Զժամա — դրուած արարողութիւններու համար ե — կեղեցին պատասխանատուութիւն չի ստանձներ:



## «ՅԱՌԱՋ»Ի ՄՕՏ

ԿԸ ԳՏՆՈՒԻՆ ՀԵՏԵՒԵԱԼ ԳԻՐՔԵՐԸ.—

ՌՈՒԲԷՆԻ ՅՈՒՇԵՐԸ, 7 հատոր: Գին 6000 ֆրանք:

ՊԱՏՄԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ - ՆԵՐ (Ն. Ադոնց), գին 1000 ֆրանք:

ԳՐԻԳՈՐ ՆԱՐԵԿԱՑԻ, (ֆրանսերէնի թարգմանեց Լիւք Անտրէ Մարսէլ, ուրիշ ժողովրդական բանաստեղծութիւննե — րով): Գին 1000 ֆրանք:

Կ. ՍԱՍՈՒՆԻի «Պատմութիւն Արեւմտա — հայ արդի Գրականութեան» Գին 800 Ֆր.:

Թղթատարի ծախքը գնողին վրայ:



## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Վճարումները դիւրացնելու համար կը խնդրենք մեր բաժանորդներէն դիմել հե — տեւեալ հասցէներուն.—

ԱՆԻԷՌ, ՔՈԼՈՄԲ – ՊՈՒԱ-ՔՈԼՈՄԲ.— Ընկերներ Յակոբ Հիսայեանի եւ Արամ Ա — ւետիսեանի:

ԻՍԻ. եւ ՄԷՕՍՕՆ.— Ընկերներ Եր — ուանդ Ատանալեանի, Նշան Դարբինեա — նի կամ սրճարանապետ Զատիկեանի:

ԱՌՆՈՒՎԻԼ – ՍԱՌՍԵԼ.— Ընկերնե Արփիար Մարտիրոսեանի եւ Կարօ Երան — եանի:

ԱՆԿԷՆ – ՄՈՆՄՈՐԱՆՍԻ.— Ընկեր Սա — հակ Տէր Թովմասեանի:

ԱԼՖՈՐՎԻԼ.— Ընկեր Բարթող Փա — փազեանի:

ՇԱՒԻԼ – ՎԻՐՈՖԼԷ.— Ընկեր Գրիգոր Կիւլեանի:

ՊԱՆԵՕ – ՔԱՇԱՆ.— Ընկերներ Ներսէս Տականեանի կամ ԲարթամՊասմաճեանի:

ՍԵՒՐԱՆ.— Պ. Խլոյեանի:

Կանխայայտ շնորհակալութեամբ՝

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ



- Imp. Araxes 46, rue Richer. Paris

